# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ

ՅԱՂԱԳՍ

## ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ

## ԵՒ ՔԱՀԱՆԱՅԻՑ

## ԵՒ ԳԼԽՈՑ ՆՈՑԻՆ



ՎԵՆԵՏԻԿ

*Ի Տպարանի Մխիթարեանց*

1853

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Թէպէտեւ ոչ է մեր խնամ կալեալ կարգել՝ բանից կամ ժամանակի շարագրաց յընծայման Սոփերաց հայկականաց, սակայն որ այժմս 'ի լոյս ձօնի՝ Հատոր Գ., Յովհաննու Սարկաւագ Վարդապետի յաղագս Քահանայութեան ճառ, պատուականութեամբ իւրին և պիտոյից ճահողութեամբ ներկայումս վիճակի ազգիս, գուցէ ինքնին և զնախադասութեանն պահանջէր իրաւունս: Այսպիսի իմն իրաւունս ստացեալ ունի գրիչն այն սքանչելի՝ 'ի կաճառս բանագրաց և իմաստնոց, ոչ միայն իւրոցն եւեթ ժամանակա-

կեաց, այլ երկնեմ առնել՝ Թէ և համօրէն զարուց զպրութեան, և ազգայնոյս և արտաքնոց։ Քանզի հոգւոյ մխիթարեալ վսեմական և մտաց ծննդական, սա և՛ւ ազգիխաղցի մատեանս յօրինեաց, և՛ւ յամենայն ուշ և յարուեստ՝ քաջ և ճարտար հանգիստացաւ. որպէս և վկայեն հանգիտողք բանից նորա. զորոց և մեր յիշատակ արարեալ է այլուր ուրեմն*, ուր և զգանձկացողն ծանօթութեան՝ տառաքեմք։ Աստանօր ղայս մի ինչ յաւելեալ՝ ի յուշ, զի սեփական ստացք հանճարոյ Սարկաւագայ են, վսեմութիւն մտաց և բանից արդարակ զատողութեամբ հանդերձ. քան զոր արդարև չիք ինչ ցանկալի և հեշտացուցիչ բանասիրաց. բայց միայն զի ռամկաց և համբակաց՝ սա բաղում ուրեք

* Բազմավէպ, Հատ. Ե. 214.

անհաս գտանի, վասն ընդ բարձրա-
թռիչ մտացն թեւս՝ կամելոյ լծա-
կցել և զոտս բանիցն. որով և չիցէ
զերծ 'ի ստգտանաց, զի մանուածոյ
կարգուածով խօսից՝ նսեմացուցա-
նէ իմն զվեհունակ իմաստիցն պար-
զութի̃, որովք գերազանցէն թերեւս
զամենեքումք մերովք նախնեօք,
և ընդ պղատոնականն աթուակցի
արժանապէս: Բայց ճառս որ արդ
ընծայի՝ պարզաբան է քան զյո-
լովս 'ի ճառից մատենագրին. զորոյ
դատաստան և զօգուտ՝ թողումք ըն-
թերցանելեաց՝ և նախ նոցին իսկ՝
առ որս բանքն ուղղեալ են. և ապա՝
վարեցելոցն ընդ նոցուն ձեռօք. և
երրորդ՝ վեհագունիցն այնոցիկ,
որք ձեռս 'ի վերայ եդեալ՝ ընծայեն
քահանայս 'ի սպաս ժողովրդեան
և եկեղեցւոյ. զի և առ նոսա իսկ
վերադառնայ ամենայն գովութիւն
կամ վնաս՝ որ 'ի պատճառս քահա-

նայից գործոցն 'ի ժողովրդեանն, որ է բազմութիւն հօտին Քրիստոսի :

---

Մի միայն օրինակ կայր առ մեզ ձեռագիր, գրեալ յԵրզնկա, 'ի Թուին ՉՂԲ, որ թէպէտեւ ընտիր, այլ տառս փափախաքել և այլում գա-ղափարի :

Զհետ ձեռագրիս յաւելլումք և զի-մաստասիրաց յօդուած մի բանի կամ ընտանեբազան ձեռաց նորին մատենա-գրի յայլմէ օրինակէ :

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

# ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ

# ՎԱՍՆ ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ



Կարգ իշխանութեան յաշխարհ մտելոց, և վարչութիւնք մարդկայինք և կենցաղոյս օգուտք բազմաբաշխ և յոքնօրինակք, ունին օրէնս ըստ իւրաքանչիւր աստիճանի, աննուազ և առանց յաւելուածոյ զսահմանեալն մատակարարեալ՝ յօգուտ ընդ ձեռամբ անկելոցն. որոց ջան և փոյթ ոչ փոքր ինչ յանձին ունել՝ սիրելի և հաճոյ է. որպէս զի մի՛ զյարմարականսն՝ առ՚ի գոլ վայելուչ զանցանելով, պարտաւանս ՚ի վերայ ածիցեն անձանց, կամ տանջանս ՚ի վեհագունիցն՝ յորոց և նոցայն իշխիցեն: Քանզի արտաքոյ

իրաւանց է և անտեղի բոլորովին , ոչ ըստ արժանի իշխանութեանն գնալ կոչմանն , կամ պղերգաբե-րել՝ և Թերահոգ առ գնիլ յոր հա-ւատացաւն հոգեբարձութիւն նմա : Վասն որոյ զարդարն ընտրելով 'ի խորհրդեան՝ իմաստնագոյնս 'ի գը-լուխս կացելոցն , զի մի՛ հասարա-կացն կորիցէ շահ և օգուտ , զաշ-խատութիւն տաժանելի և դժուար-ըմբեր անձամբ լնուլ առանց գան-գաղանաց , ոչ ծանր ինչ կամ ան-պարտ և անարժան գրեն . և զի ոչ 'ի մարմնոյ միայն մարդ , այլ և 'ի բանաւոր և 'ի մասաւոր հոգւոյ կազ-մեալ հաստատեցաւ , ոչ արժան էր ըստ մարմնոյ ևեթ վերակացու-Թիւնս օրինաւորել սմա՝ առանց խնամոյ անձնականի . զի Թէ հոգի առաւել է քան զմարմին ըստ ան-սուտ հրամանին , փութոյ ապա ու-րեմն առաւելագունի անբաժ և ան-կցորդ ոչ եղիցի : Վասն զի քահա-նայութեան գործաւորութիւն և պատիւ , ոչ այլ ինչ քան զանօրէ-նութիւն հոգւոց առ 'ի փրկութիւն

ունի դիտաւորութիւն. վասն որոյ բարձրագոյն և նազելի յոյժ քան զանուանին յաշխարհի և ամենահռչակ ըստ ճշմարտութեն է. վասն զի թագաւորութիւն ծառայեցուցանէ զմարմին, և իշխէ նիւթականին և ապականացուի. փրկութիւն իսկ քահանայութեան յանձն է, և խնամ անմահի և անապականելոյ անձին. նոցայն զօրութիւն կարգ և հրաման մատակարարութեան, քան զատորեւ կացեալ վերջնոց աշխարհիս մասանց զծանրութիւն միջակելոց՝ ամբառնալ ոչ երբեք ուրեք կարացեալ. քանզի պատերազմ տան 'ի ծովու և 'ի ցամաքի. կամ վասն հայրենեաց յատակի և փրրկութեան ազգի, կամ յաղագս զերծանելոյ զօտարաց և վտարանդելոյ յինքեանս: Իսկ սոցա մարմնական ինչ շահից դիւրավատնելոյ և երկրականի ընդարձակութեան միջակաց՝ չխասնելոյ զհոգիս՝ հրաժեշտ տուեալ է ամենեւին զհետ ընթանալ, գոնէ խորհրդօք մտաց. վասն զի թէպէտ մարմնով գնալ թուին՝



ոչ եթէ ըստ մարմնոյ կրօնաւորին. տակայն և զօրս կացեալն յերկրի և կամ արձակեն, նմանապէս և յերկնի ունին: Զի թէ զուրուք թողուցուն զմեղս՝ հայելով յանկեղծաւոր խոստովանութեանն ապաշաւ և զղջմանն՝ թողեալ լինի. և անգրէն ընդդէմ, եթէ զուրուք ունիցին 'ի խոստովանութենէ անպարձիցն՝ կալեալ լիցի. որ ոչ ունիք տուեալ յըստ աշխարհիս զօրաւորաց, կամ զազանաց ինքնակալաց:

Փրկչին մերոյ և առաւել Յիսուսի Քրիստոսի՝ 'ի կատարումն զատուերականն ածել և զհին իւրով զալըստեամբն և միջնորդութեամբն, քանզի ոչ եկն լուծանել զօրէնս այլ լնուլ, մեծացուցանէ զերաղարդ պատուով և իշխանութեամբ զքահանայութեն խորհուրդ. Նախ ինքեամբ 'ի լինելն մարդասիրութեամբ ըստ մեզ մարդ կատարեալ, աւգողոմէն և մեալոմէն աստուած Ճշմարիտ. վասն զի երեկ յայնժամ եղեալ և անուանեալ քահանայ ոչ ըստ կարգին Ահարոնին, այլ ըստ

կարգին Մելքիսեդեկեայ. զի և Թագ֊
արդարութեան, որպէս ունի ահա
անուանդ առակոչութիւն և Թագ֊
խաղաղութեան, 'ի քաղաքէն Սա֊
ղեմայ ըստ մեծութեան կանխեցե֊
լոյ խորհրդոյն, և է և անուանի.
այլ և անհայր և անմայր չհամարեալ
յազգս, որոյ ոչ սկիզբն աւուրց և
ոչ կատարած կենաց. զի Թէ ստուե֊
րակերպ գծագրութիւն այնքան 'ի
զօրութիւն և բանի արժանաւորու֊
թիւն, մինչ զի ասել. Նմանեալ որ֊
դւոյն Աստուծոյ կայ մնայ քահանայ
մշտնջենաւոր. զնորուն ինքեան իսկ
զճշմարտութեանն իր և խորհուրդ֊
դերամբարձեալ՝ ո՞ Թարգմանել
արժանապէս և 'ի հարստամիտ քա֊
ջամիտ ուսումն արանց կարասցէ
ոք. բազում են կացեալ, ասէ, քա֊
հանայք վասն մահու արգել լինե֊
լոյ առ 'ի մշտնջենաւորել. իսկ սա
վասն յաւիտենական կալոյ առանց
անցանելոյ ունի զքահանայութիւն:
Տեսանեմս զի ոչ միայն 'ի լնուլն զան֊
ձաւելի քահանայութեան գործ
կոչեցաւ քահանայ, այլ և այժմ և

առ յապայ յապագայս առ մեզն դը-
թութեան անբաղդատականին՝ կոչի
քահանայապետ, յոր ցանկ և ա-
ռանց յապաղման աշխուլ ոչքք մնայց՝
հրամայէ մեզ նոյն ինքն որ պայտո-
ռեկ իմաստասիրէ մեզ Պաւղոս խոր-
հրդածու. Ուստի եղբարք սուրբք,
ասէ, երկնաւոր կոչմանն բաժա-
նորդք. հայեցարուք ընդ առաքեալ
և ընդ քահանայապետ խոստովա-
նութեան մերոյ ընդ Յիսուս Քրիս-
տոս. պատկառեցուք եղեալքս
անուանակիր, և այնր պատարագի
արժանաւորեալք սպասաւորել.
Մի 'ի դատապարտութիւն անձանց մերոց
կերիցուք և արբցուք. Մի պարտա-
ւոր լիցուք տէրունեան արեանն և
մարմնոյ, առանց արժանաւոր և
պատուածավայելուչ զգուշութեան
մերձենալով. Մի կեղծաւորեալք
յաչս մարդկան երևեալ, եթէ ոչ
իցեմք մաքուրք և կատարեալք, ան-
շիջանելի բոցոյն և յարաբերութեան որ-
դանցն լիցուք ճարակ առանց սպա-
ռելոյ և մահու: Ոչ ինչ 'ի մերոցն
պանխլացեալ թագնու յամենահայ

եաց աչաց ակնածուէին մերոյ Քրիս֊
տոսի , և զի՞նչ օգուտ մեզ 'ի մարգ֊
կային ստակարծ խաբկանացն գոր֊
ծիցի . ո՞ 'ի բաց քերեացէ յանխաբ
աւուրն ատենի 'ի մէնջ զչարաչար
պաշարս , և ժանտագործ աղտեղու֊
թիւնս զաստի ամբարեալ բծկանու֊
թեանցն . ո՛ և զզժնդակապէս գը֊
ծագրեալ 'ի տախտակս ոգոցն զվատ֊
թար և զամօթալից գիծսն լուացէ
մեզ՝ առ 'ի լաւագունի և գեղեցկի
ընդունելութեան գրոյ ։

Այժմ լուասցուք , տատէն մա֊
քրեսցուք . յետ որոյ և վայելեալն
յաստուածային և սուրբ գոհութե֊
նէն առանց ստգտանելոյ և դատա֊
պարտութեան համարձակեալ լի֊
նի . տացուք 'ի ձեռն ամենիմաստ
գրչին ղլուացեալն և հարթ 'ի խո֊
շորութենէ մտաց զընդելութիւն .
զի գրեսցէ զբարիոքն և ամենահա֊
ճոյ իմաստս որպէս և կամի , առանց
եղծանելոյ միւսանգամ . որպէս զի
նմին ինքեան քահանայապետին ըն֊
տանեգոյն զտեսութիւն՝ և զգործս
և զօծման արժանաւորութիւն կա֊

լեալ և ցուցեալ՝ պայծառապէս 'ի կարգ պատուոյ Ճշմարիտ և անպարտու խորհրդածութեան անկանիցիմք. և 'ի պարծանս անձանց մերոց ոչ երբէք ուրեք հեռացեալ մեկուսի գտանիցիմք 'ի նմանէ. այլ և զառ 'ի տկարութենէ սխալանացն այսպէս մերձն գոլով և մատչելով աղաչել 'ի կենացս ժամանակի դիւրաւ ընդունիցիմք քաւութիւն և անյիշութիւն. քանզի մեծ է ողորմութի̃ և առատ՝ որոց ջերմութեամբն հայցեն. երաշխաւոր մեզ և այսմիկ լինի Պաւղոս ասելով. Ունիմք այսուհետեւ քահանայապետ մեծ անցեալ ընդ երկինս զՅիսուս զորդին Աստուծոյ. պինդ կալցուք զխոստովանութիւն. ոչ եթէ ունիմք քահանայապետ որ ոչ իցէ կարող չարչարակից լինել տկարութեանցս մերոց, այլ փորձ է ամենայնիւ ըստ նմանութե̃ առանց մեղաց. մատիցուք այսուհետև համարձակութե̃ք առաջի աթոռոյ շնորհաց նորա, զի ընկալցուք զողորմութիւն և գտցուք շնորհս 'ի դէպ ժամանակի օգնականութե̃:

Բայց տեսանեմ զյոլովս և 'ի կամակար մտօք մահուչափ մեղուցելոց, որոց և յայտնի իսկ են մեղքն և յառաջագոյն հասեալ 'ի դատաստան, ոչ միայն խիստ և անզեղջս բարուք կամաց 'ի խնդիր Թողութեան, այլ և յանդգունս և անամօթս. զի յառաջ գան առանց շիկնելոյ և պատկառանաց և առանց երկիւղի, բացա գլխով առնուլ ձեռնադրութիւն քահանայութեան: Արդարև ողբոց և մեծամեծաց արժանի է աշխարանաց և արտասուաց՝ գործն: Իսկ որ կցորդն ամենայօժար կամօքն եղեւ օտարացն մեղաց, վասն արծաթքապաշտութեան՝ և նմանապէս յանդգնութեան, մատեաւ վաղվաղակի եդ ձեռս 'ի վերայ, ոչ նմա տալով հոգւի օծութեան և շնորհաց ըստ ուսում կարծեն, ոչ առանց մոլեգնութեան և զառանցանաց, այլ յինքենէ 'ի բաց ընկենլով զոր թերեւս ունէր՝ յաջողութեան և պաշտաման կամ շնորհաց, և անյոյս առ մեւս անգամ ընդունելոյ, և դատարկացեալ ունայն և ամայի

գաղանայ գնալ յինքն . յիրաւի ապա արմատ ամենայն չարեաց գրեցաւ գոլ արծաթսիրութիւնն ։ Որ և զխակարխմանացն Յուդա ամենայն բարբառածն հաւանեցոյց յանդըդնել յանսուրբ և յանօրէն վաճառըն . և զԳեեզի ծաղկեցուցեալ բորոտութեամբն , տարագրեալ մերժէր յերեսաց և 'ի տեսլենէ սրբոյ մարգարէին և աստուածարեալոյ ։ Եթէ ոք հաւատապէս ուշ եդեալ խրացդ՝ ընդ միտ ածցէ ամենայն ստուգութեամբ զանարժան և զազտեղի անըննական ախտից զժնդակութիւն , գտանէ վերադոյն աղծութեան ամենայնի , և անդր քան զամենայն տարօրէն գործս . զի թէ 'ի մարմնական իրս և յարտաքին աւեանս հրաժարեցուցեալ է ապանուլ կաշառս , քանզի ոչ եւս յեկեղեցւոյ և մանաւանդ 'ի ժառանգաւորաց պարտ իցէ խոստեալ և յամպարշտութեան գրել մասին ։

Յոթոր խորատ տայր մեծի մարգարէին Մովսիսի կացուցանել 'ի վերայ ժողովրդեանն արս իմաստունս ար-

դարակորովս որ առիցեն զկաշառս ,
դիտելով զի կաշառ կուրացուցանէ
զաչս համարձակահայեացս. և ողջս
՚ի տան Աստուծոյ կանգնեն կուռս.
որպէս զի մի՛ Աստուծոյ այլ մամո֊
նայի ծառայեցելոց են. և զպար֊
գեւան Աստուծոյ՝ որում ոչ եւս են
արժանի, ընչիւք ստասցեն և ստա֊
ցուսցեն, ընդ որում և կորնչելոց են։
Անխորատ և ռամիկ ժողովրդեանն՝
տատիկանաց արդարոց և կաշառա֊
տեցաց՝ խրատունք և պէտք եղեն
կալ ՚ի գլուխ և դատել. իսկ ՚ի վե֊
րայ մանկանց և եղբարց Քրիստոսի՝
հատուք ոմանք և գողակիցք գողոց,
զի զայլսն լուռ եղէց ։ Կացին առ
մեւք շահապք և պարետք, խուզա֊
կըք և հետաքրքիրք պատճառաց և
իրաց դանդաշահութեան, ծառայք
արտօրէն և խակամիտ կենցաղոյ, ար֊
տաքսեալք ՚ի տանէն ըստ անարժա֊
նութեան անազատոյ և վայելման,
որք զուղտս կլանեն և զմժղուկս ոչ
սիրեն քամել. զարտաքինն ոչ սրբեն
զսկաւառակին և բաժակի, և ներ֊
քինն լի է հասով նեխութեան և

գարշեցուցիչ ախտիւ և գժուարալուացաւ․ սախտակութիւն բնոյ ոչ 'ի վերայ փայլակէ բնաւ, և զխորագոյնն եկուլ մահ․ գանգիւն և խաւարն 'ի ներքոյ շնչի, և բուրումն ժահահոտ ապականութեան․ լոյս գիտութեան բացամերժեալ է յերեսաց անգիտութեան խաւարի․ ատեն զաւիւ և ոչ շնչին 'ի նմա, զի աձուլն մնդգեան, և յանկուցին կատարածի տիոց՝ զիշերի արուեստագործեցաւ ։ Մի՛ արամեացին սուրբք և լուսաւորք յեկեղեցւոջ և ուղղապէս համառօտիչք բանին վարդապետութեան՝ զայսոսիկ լսել, որք և գեղեցիկ կարգօք պայծառացուցանեն զնա և հոլովեն իմաստութեամբ Հոգւոյն սրբոյ․ այլ զգուշացին մանաւանդ ամենայն զօրութեամբ 'ի դարանակալութենէ ոսոխին մերոյ, որ շնչի գոչելով և կլանել խնդրէ, զորս ոչն գտանէ արթուն ։

Երկիւղական են հանդերձեալք և անյայտութեամբ զգեալք որպէս ծօղակ թռչնոյ կամ որոգայթք այծեմանց և այլոց կենդանեաց ազգա-

կցաց նոցա. որոյ աղագաւ խրատե-
ցաք յամենայն ժամ կալ յաղօթս
չմուծանիլ ՚ի փորձութիւն, այլ
փրկութեամբ հօրն Աստուծոյ զեր-
ծանել ՚ի բազմամասն և յաղամո-
զեալ չարին որսորդական հնարից ՚ի
կամս իւր, ընդխառնեալ և զմար-
մնոյս ոսկարացուցողական աշխա-
տութեանց երկս, յառաւել զգու-
շութիւն փրկութեան ոգւոց. զոր և
աստուածազանն գործելով Պաւղոս,
Ճնշեմ զմարմինս իմ և հնազանդե-
ցուցանեմ զսա, գուցէ քարոզս և
վարդապետ այլոց եւ ինքն անպի-
տան գտանիցիմ. և եթէ նա զայս
գործէր վասն երկբայելի և չարա-
կասկած մարմնոյս բնակութեան,
զիարդ անհոգս լինելով արժան ու-
մեք իցէ խնամ տանել մարմնոյ, առ
՚ի գրգռութիւն մարաւ ընդդէմ
իշխանականին առաջնորդի անվայե-
լուչ և անտեղի. և անբան իսկ է
զվերակացութիւն ընկալելոց գա-
ռանց Աստուծոյ՝ տալ զինքեանս
հանգստեան մարմնականի, և ինք-
նասէր պարապելոյ անձին ախտի,

զօրավայն պատարելով. քանզի և ժամանակ իսկ ոչ ունի յայսոսիկ պարապոյ՝ այլ ընթերեալ 'ի դարման տանել բազմաց և զգուշանալ նոցա տա. ինքեամբ յամենայն ընդդիմութեանց փրկութենէ, ոչ զառունջեան և ոչ զգիշերոյ և ոչ բնաւ 'ի սոցանէ բաղկացելոց ժամանակաց. Զգոյշ լերուք անձանց, ասէ, և հօտից յորում եդ զձեզ Հոգին սուրբ տեսուչս: Միոյ արուեստի կամ մակացութե, միոյ և այլոյ երեք գործոյ՝ թեթևադոյն փութոյ ընդելեալք և երագէտք յորոց և անուանեցանն իսկ, չկամին որոշ ժամանակ 'ի ջան աշխատութեանն ուրեանց, զի մի ըղձշգրտութիւնն կորուսեալ իբր 'ի մոռացութենէ կամ 'ի դատարկութեանն խամութենէ, ծաղր լինիցին կամ զրկեալք 'ի շահիցն:

Եւ դու զիարդ որ զմեծն յանձնեցար շահավաճառութիւն, առ 'ի սեղանաւորսն՝ և ընդունել զառ. 'ի յաւանդողէն բարիոք հատուցումն, և անուն արժանի աշխատութեանն, ախորժեսցես հանդստեամբ զա-

ւուրս տեսանել, և այն զի ոչ 'ի միոյ կամ յերկուց. այլ 'ի յոլովից անուանեալ եզերխմաստուն արուեստից, նշանակող զըստ նոցայն հանգամանաց ճարտարապետական աշխատութեան գործս. Բժիշկ, հրեշտակ, քաւիչ, վարդապետ, դաստիարակ, հայր, դայեակ, աւետարանիչ, հովիւ, զօրագլուխ, մարզիչ, լոյս, քարոզ, տնկագործ, մշակ, գլուխ՝ յետ գլխոյն, առաջնորդ, տեսուչ, հրաւիրակ, լուանող, որսորդ, տաճարապետ, հարսնածու, հաւատարիմ ծառայ, պահապան, գանձակալ, կերակրիչ, մատռուակ, զգեցուցանող, նուիրիչ, միջնորդ, դատաւոր, հազարապետ, տնօրէն, հանգիստապետ, որոշիչ, կամք Աստուծոյ, պաշտօնեայ, դէտ, ժառանգաւոր, կատարիչ, խորհրդածու. և այլ միանգամ որովք 'ի ձեռն որոց խորհուրդ աստուածպաշտութեանն լնու և եկեղեցի Քրիստոսի գեղեցկապէս և քաղցրէն կարգօք մատակարարի և ամբողջ մնայ:

Ա. Արդ որքան պէտք են քըր-
տանց զնշանակեանցս այսոցիկ կատա-
րել կամեցողաց դիտաւորութիւն,
անուանց և բանից և այլոց ևս բա-
ռից 'ի գիրս կացելոց սոցուն նմա-
նեաց. քանզի յայսոսիկ գլխաւորի
քահանայագործութեանն իր և ա-
նուն: Բժշկել՝ ոչ անարուեստա-
պէս և թերահմտաբար կամ սղա-
գունիւ աշխատութեամբ զախտա-
ցեալ և զվիրաւոր ոգիս, 'ի գժնդակ
խածման կամակոր օձին և 'ի բնա-
ւորականացն և յանքնականացն
ախտից, զտառապեալս յանձն առն-
լով երկայն աշխատութիւս, ըստ Պաւ-
ղոսի՝ անձին զայլոցն համարելով
զհիւանդութիւնս, այնքան մինչ զի
ընդ Նոսա գժուարակիր եղեալ սի-
րով ողբայ. և զամենիմաստն 'ի կիր
արկեալ արուեստ՝ բժշկել մտաց,
երբեմն քաղցրագունիւք արբուց-
մամբք դեղոց, որդեակս անուա-
նելով և վերստին երկունս՝ մինչեւ
նկարեսցի Քրիստոս 'ի Նոսա միւս-
անգամ ծննդեամբ. իսկ երբեմն

զՃաշակելիս մտացն դառնացուցա-
նելով 'ի ձեռն սաստկական բանիցն
յանդիմանութեան, յորժամ զայ-
նոսիկ 'ի շահ օգտութեան լինել տե-
սանէր. և ապա առողջոցն հրամայ-
էր քաղցրութեամբ ընտրել զշահելն
յապաշխարութենէ ապաքինութի
'ի ժողով դասու: Իսկ յառողջու-
թիւն գոլով, զանյոյսս և զողջոցն
պատՃառս ապականութեան՝ հա-
տու սրով 'ի բաց կտրեալ, սատա-
նայի մատնէ զի խրատեսցին, ասէ, չը-
հայհոյել. և մնացականացն յանախ-
տական առողջութեան՝ զգուշութե
տայր պատուէր և ըմպելի մշտնջե-
նալոյ 'ի նմին:

Բ. Հրեշտակ. քանզի քահանայ
հրեշտակ տեառն ամենակալի է, և
պատգամք 'ի բերանոյ նորա լսին,
վս որոյ շրթունք նորա զգուշասցին
գիտութե, Մաղաքիա ուսուցանէ.
վասն զի հրեշտակք ոչ զիւրեանց
ինչ, այլ զառաքչին առանց յաւե-
լուածոյ և պակասութեան պատմեն
բանս, առանց երկիւղի և պատկա-

ռամկաց անակնածապէս, պատրեալ հրապուրանօք և ոչ յիմիքէ պատճառանաց. քանզի որ կաշառաց յուսով և առաձեռն պատրաստութեամբ, 'ի մօտոյ անդէն կամ աշառանօք երեւաց շողմողէ նենգաւորանութեամբ, ոչ հրեշտակ պատգամաբեր այնպիսին և խաղաղութեան միջնորդ, այլ մատնիչ բանսարկու կոչեցեալ յանուանցն և յիրացն երեւեսցի. և զիրաւացին առնուլ 'ի ժամանակի ըստ ուղիղ դատաման պահանջմանս վճռուց, ոչ ոք սասասցէ անպարտ և անխրաւ գոլ. վասն զի ոչ ըստ ակամայ յանցաւորութեան գոյցէ ողորմութիւն, այլ խըրեւ զնախայօժար կամօք մեղանչական 'ի մեծամեծս առաւելի եղեալ սատակեսցի, որպէս օրէնք հրամայեն արդարք: Ուրեմն զառաւելագոյնն ընկալցի մահու դատաստան առանց փրկանաց և ողորմութեան. զայն զայսու յեղանակաւ գործիչ այր, յԱստուծոյ առ մարդիկ բերողաց բան և կացելոց գլուխ ժողովրդեան: Իսկ հաւատարիմն և անմեղն 'ի բանս

Աստուծոյ՝ զհակառակն այսոցիկ պատուոյ բարգաւաճանս, վայելչմամբ ուրախութեան յաւիտենականի ընդ որս կան առաջի Աստուծոյ հրեշտակս՝ հանդիպեսցի։

Գ. Քաւիչ, յաղագս նախանձու և վրէժխնդրութեան Աստուծոյ, քանզի և Փենեէսի կացելոյ 'ի մէջ եղեւ քաւութիւն և արգելաւ մահ. կամ խաղաղականօքն ազօթիւք ընդունելիովք Աստուծոյ՝ առնլով թողութիւն պարտաւորացն, որպէս Մովսէս, քանզի թէ թողուս, ասէ, տոցա զմեղս թող, ապա թէ ոչ և զիս ջնջեա 'ի դպրութենէն յորս գրեցեր։ Ո՛վ անբաղդատականի սիրոյն առ մեղանչականս, վասն փառացն Աստուծոյ և ուխտին հաստատութեան առ Աբրահամ, կամ արեամբ և խնկօք, ոչ որով Ահարոնն և յաջորդք իւր, այլ գառինն Աստուծոյ բարձողին զմեղս մեր մտանել 'ի սըրբութիւնն վայելչապէս ամենայն պարկեշտութեամբ զծերունական եւս խունկն, ըստ Յովհաննու,

ականջնոցք մատուցանելով, բերեալ ազատութիւն յանցաւորութեան :

Դ. Վարդապետ. որպէս զի որոց սիրեն մտանել 'ի սուրբն և աստուա-ծային դպրոց՝ բաւական իցէ տալ զիմաստութեան գծաւորութիւնս. ոչ նշանակէս, այլ ոմանց նախկըր-թականս, իսկ ոմանց զմիջինս հան-ճարոյն, և այլոց զծայրագոյնն. քանզի ամենայն մակացութեամբ աստուածային պարտի կատարեալ գոլ, զի մի՛ կարօտասցին ծանօթքն երբեք ծածկեցելոյ խնդրոյ և տըր-մեացին. և մի՛ ինքն կրել պարսաւա-նըս՝ ամաչեսցէ այժմ, և ապա կա-ցեալ յայնժամ առաջի բեմին Քրիստոսի՝ տացէ դատ փոխանակ անզգուշութեան առ. այլովքն եւս թերութեամբք անձին :

Ե. Դաստիարակ. զի մի՛ 'ի միում միայն, այլ և յամենայն իրս ըստ առ 'ի մանկութենէ ուսմանցն՝ խրատեսցէ յարդարութիւն զմերձեցեալսն 'ի Քրիստոս Յիսուս. քանզի միով

կամ սակաւուք ոչ կարասցուք կատարեալ լինել:

Զ. Հայր. սակս ոչ անձին այլ որդւոցն գանձելոյ՝ զորս ծնաւն 'ի Քրիստոս Յիսուս աւետարանաւն, և մի՞ զայրացուցեալ զմանկութիւնն ինքն ատելի եղեցի: Այլ սնուցանելով զնոսա ամենայն իմաստութեամբ և խրատու տեառն հանգիցէ 'ի նոսա և փառաւորեսցի, և տացէ անուն բարիոք 'ի տեսողաց զնոսա. քանզի յորդիս իւր ծանիցի այր՝ ասէ գիր. դարձեալ՝ և պարծանք առն որդիք իւր, յայտ է թէ իմաստունքն և խրատեալք 'ի պատուիրանս Աստուծոյ. այլ և 'ի գաւազան սաստի և յանդիմանութեան, յորժամ պէտք իցեն ոչ խնայել. քանզի որ խնայէ 'ի գաւազան՝ ատեայ զորդի իւր. իսկ որ սիրէն ցանկ խրատէ. և առաքեալ՝ Որ մեղանչենն, ասէ, առաջի ամենեցուն յանդիմանեա զի և այլքն երկիցեն. բայց և պարծանք որդւոց հարք այնպիսիք, յորոց և զբարիոքն ընկա_

լան կեանս ։ Արդ առ այս գլուխ բաղդումք են առաւելք բանից, բայց շատ առ այժմ այսքան ։

Է. Դաւթական. առ 'ի մտունգ հոգեորականին տիոց մանկութեան, և զՋերմն գործոյ արկանել 'ի վերայ աղայոցն 'ի Քրիստոս, զգութ կերակրեալ 'ի տկարութե՟ ճաշակելեացն մտաց ։ Նախ կաթամբ բանին մինչեւ եղիցին յայր կատարեալ 'ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի . և կրթեալ ճաշակելեացն առ ընտրութիւն բարւոյ և չարի՝ բաւականացին զկատարելոցն ընդունել կերակուր, և յանձինս իսկ ոչ խնայել առ սիրոյ նոցա ։ Որպէս դայեակ մի առէ որ սնուցանիցէ մանկունս այնպէս գթացաք 'ի ձեզ . հաճոյ թուեցաւ տալ ձեզ ոչ միայն զաւետարանն այլ և զանձինս մեր, զի սիրելիք մեր եղերուք ։

Ը. Աւետարանիչք . զի զուրախութիւն առաւ կենացս և հանդերձելոցն տալ առատութեամբ 'ի լսե-

լիս սպառողացն. քանզի բարեպաշտութեան բան, որ է առ ամենայն ինչ օգտակար, ունի զաւետիս կենաց զայժմուս և զհանդերձելոյն յաւիտենից. և զէապէսն աւետիս, որ է հոգին ճշմարտութեան ըստ որում ասաց տէր. Ահաւասիկ առաքեմ զաւետիս հօր իմ առ ձեզ: Ոչ միայն 'ի վերստին ծննդեանն օծմանն և ձեռնադրութեամբ ձեռաց տալ նորածնից, այլ և ցանկորդ վարդապետութեամբ ուղիղ հաւատոյ և անախտ վարուց պահել 'ի նոսա. կամ զորոմեալն և հեռացեալ յաղագս 'ի մէնջն պատճառաց չարաց որ 'ի բանից և գործոց՝ այսրէն դարձուցանել, ընդդիմակ առաքինի վարուց ունակութեան լինելով առիթ: Եւ այս իսկ է աւետարանեալ խաղաղութիւն 'ի տեառնէ՝ հեռաւորաց և մերձաւորաց. զոր 'ի վերայ եղանելով բարձու լերինն հաւատոյն ճշմարտութեան՝ որոց կարեն աւետարանել, 'ի տեառնէ ընկալեալ զբան Սիոնի Նորոյ և Երուսաղեմի, հրամայէ զօրութեամբ ու-

ժայ բարձրացուցանել զբարբառ : Նա քեզ ամենայն իրօք, ով դու, թուի հայել հրամանականիս բանի դիտաւորութեն, և ոչ պարտիս կալ 'ի զանխուլս՝ ծածկոյթ զբազմութիւնս աանելով, զի մի՛ սոսնկանոզ թագաւորականին երևեալ հրամանի՝ անդերձ զվճիռն ունիցիս մահու. այլ զի քո գեղեցիկք երևին և ցուցցին սոսք որպէս աւետարանչի համբաւուն մեծին խաղաղութեան 'ի փրկութիւն անձին և 'ի փառս Քրիստոսի :

Թ. Հովիւ. զի ոչ զանձինս, այլ զխաշինս արածիցեն. քանզի և քաջն հովիւ ոչ անձին խնդրեաց ինչ հաճոյ լինել, այլ բազմաց զի ապրեսցին, յորոց վերայ եդեալ զինքն կամաւորութեամբ, 'ի գազանին ժանեաց 'ի բաց կորզեալ թափեաց : Մի՛ և դու անփոյթ առնիցես ոչխարացն մեծագնի ժողովելոց, արասցես եթէ չիցես վարձկան 'ի մարմնի սերմանելով կամ կթելով զուրս 'ի խաշանցն. զի մի՛ զապականութիւն

յաւիտենական փոխանակ այգորիկ ժողովեսցես ։ Այլ հալածեա զզգա_ զանսն, զվերաւորեալսն բժշկեա, որկ 'ի վերայ ձեթ և գինի, զպատ_ ճառն ուրախութեան և զուարթու_ թեան հոգոյ. մի՛ եղիցի գողանալ զոք աւազակին յարօտականաց քոց. մի՛ զքնով անկեալ կորուսանիցես. մի՛ յանծանօթ ճարակաց վայրս շրջեցուցանելով մոլորեցուսցես ։ Եւ են սոքա տգիտական և օտարոտի ուսմունք. զինչ այլ ինչ է քահա_ նայից զտէր ոչ ճանաչել ասացեալն եթէ ոչ վայելումն 'ի նոցայսն, զոր անուամբ կաթին և սուտ նշանա_ կեաց. և փոյթ վասն կենաց ոգւոյ նոցա ոչ բնաւ առնել. յորս յաւե_ լու եւս՝ և զգէրսն զենուլ, և զհաս_ տահարուսան աշխատ առնել, որ_ պէս թէ 'ի ճոխագունից սեղանս և 'ի բաժինս հասից զանձինս պա_ րարելով առանց խմորոյ հովուա_ կանի բառնան թողուն զնոսա ։ Իսկ զոսա ողջացն փշրեալ կարծեմ զեղ_ ծուցանել վարուցն խօրեանց ապա_ կանութեամբ զբազումս՝ ոչ միայն

'ի խառնակեցաց , այլ և յերկեղա-
ծից դայթակղեցուցանել՝ և որ ինչ
առ այս և վասն այսորիկ բանք են
առասցեալ յեզանակօք իւիք 'ի գիրս ,
կամ պարզաբար՝ և գործք և կերպք
նոցա և յաղագս նոցա յոյժ երկայ-
նագոյնք են , և առ այժմուս բան
ոչ հարկաւորք :

Ժ . Իսկ Զօրագլուխ կոչել , բաց
երևապէս ցուցանէ ոչ խաղաղու-
թեան այլ պատերազմի զայժմուս
զօր ժամանակ 'ի հաւատս եկելոց և
բարեպաշտից , առաջնորդութեամբ
հարց սրբոց և քահանայից . և ա-
ռաքինի զօրապետս՝ զայս ուսուցա-
նէ Պաւղոս ասելով . Ոչ է մեզ մարտ
ընդ մարմնոյ և ընդ արեան , այլ ընդ
իշխանութիւնս և ընդ պետութիւնս
և ընդ աշխարհակալս խաւարիս այ-
սորիկ , ընդ այսս չարութեան որ 'ի
ներքսոյ երկնից . և զպատասխանացուն
այսր Ճակատու զսպառազինութիւն,
որպէս զի կարասցուք 'ի գիշեր հար-
կանել չարին՝ յաւուր չարութեան,
և զմուխս նետս նորա շիջուցանել

Հրամայէ՝ և խրատ տայ աճնուլ. և են որքա հաւատք, յոյս, սէր, քանզի սիրով վարկանիմ նշանակիչ զաւելին, թէ զուեղի կայՁիք: Արդ արութիւն, Ճշմարտութիւն, աւետարանական խրատու ունկնդրութիւն, և վարդապետութիւն, հոգի սուրբ, զորս այլաբանելով ասէ, վահան, և սաղաւարտ՝ սուսեր՝ և գօտի՝ և կօշիկս: Արդ որպէս ո՞ իցէ յարդարիչ Ճնկատոու և կազմիչ, այլ և նախամարտիկ եւս և առաջին ախոյանից. զի՞արդ բաղձնուլ որ երբեք կարասցէ զ'ի վայր քարշողաւ սորին մտածութեամբ և մարմնականաւ. քանզի ոչ ոք զինուոր ընդ կեանս աշխարհիս պատաղեալ կարիցէ հաՃոյ լինել զօրավարին, այսինքն մերոյ նախարարապետին և Թագաւորի Յիսուսի Քրիստոսի. և եթէ մարտիկ որ իցէ՝ ոչ պսակի, եթէ ոչ ըստ օրինին մարտիցէ. եթէ առանց օրինին յաղթող՝ ոչ արժանի պսակի դող դատեալ եղեւ. իսկ պարտեալն յամենայնի՝ յորս հարկաւոր էր յաղթել՝ այլ և կարելի, զի՞նչ կրել-

հանդերձեալ իցէ 'ի ժամանակի բաշխման յաղթանակացն՝ 'ի զայնոսիկ մատակարարողէ և յարգար դատաւորէ ։

ԺԱ. Մարզիչ կոչի ոչ անիր և վայրապար, այլ վասն զի ուսուցչի և յարգարողի առաւել քան յարտաքին մարմնոյ և յարուեստ՝ մերս պիտանան մանկունք, և աւանդեալ տուան 'ի Քրիստոսէ 'ի ձեռս նոցա, որպէս զի առաջին հրահանգացն և սկզբնականաց թեակոխութեամբք, և յոգիս նոցա կատարելութեան հիմնաւորեսցի տեսուած. և 'ի ձեռն թեթեւագունիցն և փոքուն առ սակաւ սակաւ ընդելեալք և կըրթեալք, առնուլ զմեծագոյնսն և առթուեցեալ ծանունս բաւականացին. քանզի և ձիավարութեան և աղեզնաւորութեան և այլոց զինուց շարժականութեանց՝ առանց խրատու և 'ի մանկութենէն արուեստապէս վարժութեան, չէք հնար առզեկութիւն առնուլ. նմանապէս և բանամարտութեան, և այլոց հան֊

դիտականաց ուսմանց՝ յորս ինչ չեք դժուարագոյն ուսանել քան զկարգս քրիստոնէութեան ։

ԺԲ. Իսկ լուսոյդ 'ի վերայ առա-կոչութիւն՝ արանց Աստուծոյ աշ-խարհի խորհրդածուաց 'ի տեառնէ հրամայեցաւ , քանզի առատ և առանց նախանձու ունելով ձեռն և կամս՝ ոչ անարժան համարեցաւ հաղորդս գոլ անուան զծառայսն , որք 'ի ագիտութեանս խաւարէ 'ի նա ինքն 'ի լոյսն Ճշմարիտ հանդեր-ձեալ էին մերձեցուցանել զաշխար-հս , և յոլորտս տիեզերաց ինքեամբ զմեծի լուսոյն տարածանել Ճառա-գայթ՝ և կրկնալի լուսով վարուցն՝ կացուցանել զմարդիկ փառաւորիչս հօրն երկնաւորի , որոց յաջորդք և անուանակիցք՝ յետ նոցայն՝ և այժմուքս՝ յեկեղեցիս կացեալք՝ տեսուչք և հրեշտակք են . և հարկ 'ի վերայ կայ նախ առլի և պատա-րուն այնու քաղցր գոլ լուսով , որոց նոյն 'ի վերայ անուն դրու-թեամբ կառուցաւ՝ յարաժամ և

անընդմիջաբար առ Նա հայելով և 'ի հրաման Նորա խոկալով. ասաց թէ ոչ, որում արդեւք յեղանակաւ իցէ հնար կամակար յայլս զլուսոյն անցուցանել հեղումն՝ և առ ընդունելութիւն 'ի յոգնամանակեայ խաւարաւ ըմբռնելոյ. կամ միայն առանց այսորիկ լուսատեսչիկս և կարօտս. և զի ներհական խաւարի է լոյս՝ ասեմ ինչ ոչ են այէոք. այսպէս և իմաստութիւն՝ անզխառութեան և անզգամութեան, յայտ է թէ ընդունակք լուսոյ իմաստութեան՝ ընդունականաց ողխառութեան խաւարի. քանզի զի՞նչ հաղորդութիւն է լուսոյ ընդ խաւարի: Դարձեալ և զի լուսաւորեն զանկնիկս մկրտութեամբ սրբոյ աւազանին, և վերստին ծննդեամբ ջրոյ և հոգւոյ, այլ և հրոյ անուանեցան լոյսք:

ծԴ. Իսկ Քարոզ՝ յաղագս գոչելոյն զօրութեամբ առանց խնայելոյ, ըստ Եսայեայ՝ պատմելով ասենն Նորոյ Յակոբայ և Իսրայելի զմեղս և զանօրէնութիւնս իւրեանց, թերեւս

զղջացեալք և կամ յերկիւղ պա-
կուցեալք սպառնալեացն յինքեանս
եկեսցեն, 'ի բաց զխստասրտութիւն
և զարհամարհանս եդեալ և ըղ-
բարս թշնամանողս. որպէս ինքն
համարձակեալ ասէր. Լուարուք
զբանն տեառն, իշխանք սոդոմացւոց,
ունկն դիք օրինաց Աստուծոյ, ժողո-
վուրդք գոմորացւոց. և այլ սոյն-
պիսիք. այլ և յաղագս փրկականին,
ըստ որում և տէրն ինքնին քարոզէր
հանդարտ և քաղցր աղաղակաւ, որ
և աւագափողն ասելով. Ապաշխա-
րեցէք զի մերձեալ է արքայութիւն
երկնից. և վասն խաւնին՝ ըստ որում
Յովհաննէս 'ի կողմն Յորդանանու
զմկրտութիւն ապաշխարութեան.
իսկ առ սադուկեցին և փարիսե-
ցին, խստագոյնս՝ ծնունդս իժից՝
ասելով՝ ո՞ եցոյց ձեզ փախչել 'ի բար-
կութենէ: Այսպէս և առաքեալքն
սուրբք. քանզի և յայսմ ընտրո-
ղութիւնք ոչ դուզնաքեայ ինչ՝
վասն զի ոչ 'ի վերայ իրիք առանձ-
նական մասին որոշմամբ ասացեալ
է սա գործոյ կամ բանից ըստ աւե-

տարանին , այլ հասարակապէս և իբր սեռականագոյն անուամբ զբաւանդական ունի յինքեան և ընդ ինքեամբ որքան ինչ աւետարանականն ուսմանն և վարդապետութեանն է , զի քարոզեցաւ և քարոզի աւետարանն ըստ հրամանի տեառն ընդ ամենայն երկիր :

ԺԴ. Այլ և Տնկագործ , ըստ նշանակի այլաբար անուանի վերակացուն վարդապետ յաւ. բանաւոր և իմաստուն տնկական աշխատութենէ , ըստ Պաւղոսի ձայնին . Ես տնկեցի , ասէ , Ապողոս ջուր ետ , այլ Աստուած աճեցոյց : Նաև ինքն իսկ աճեցուցանողն տէր՝ այսու անուանի ըստ պիտոյից խնդրոյ 'ի տեղիս տեղիս գրոց : Ես տնկեցի զքեզ այգի համակ ճշմարիտ՝ զիարդ դարձար ինձ 'ի դառնութիւն , այգիդ օտարացեալ՝ ասաց մարգարէիւն . և դարձեալ . Որթ բերրի տնկեցի 'ի նմա . և այլս բազումս այսպիսիս գտանեմք ասացեալ յաղագս այսր : Արդ տունկ երկնային և բոյսք սքանչելի

մարդ յիմաստնոց եւս ոմանց անուանի ըստ սովորութեան գրոց. որոց զվնասակարս աւելորդացն և զանօգուտս 'ի պտղաբերաց՝ քշտել և յապաւել կարգեցար, որպէս զի առ 'ի պտղաբերութիւն պատեհագոյնն մնացեալ, առաւել եւս լիցի պտղատու հանդերձ տեւականութեամբն. և 'ի փոխաբերութենէ ոչ միայն զանուն, այլ և զարուեստին պարտիս հանճարեղութիւն աշխատասիրոյն. և առ տունկն տածխնամոյ, պահել, ոռոգանել ջուրբ վարդապետութեամբ, շուրջ բրել և կակղացուցանել որ առ արմատովն անպտղաբերին զխստութիւն. և զի թէ հիւթեղէն ոչ իցէ՝ արկանել աղբ առ 'ի սնունդ և պարարտութիւն յօրդորական խրատուց՝ և ազգի ազգի առ նոսա դարմանք գործոցն և բանիցն, այսպէս ածանցաբար անուանին. և կարծրութեամբ երկաթոյն բաժակեալ՝ որ է բանին սրբոյ։ Իսկ զ'ի նմին մնացեալ՝ յետ 'ի խնամոյն վայելելոյ, 'ի բաց հատանել որպէս զվնասիչ մերձաւո-

րացն պտղաբերից , և խափան եկե-ղեցականին գետնոյ անկեցաւ տուն-կըն՝ և տուաւ մշակաց , զի զպտ-տուղն ոչ ածանց , այլ անկողին պատրաստեցին . զի մի իբրև զչարս չարաւ կորուսցին 'ի տեառնէ այգ-ւոյն , և զայգին այլք 'ի հաւատար-մաց տացեն մշակաց ։

ծե . Այլ եթէ Տնկագործ և եթէ Մշակ տասցի՝ 'ի նոյն բերի , բայց սա-կայն գոյ տարբերութին յարուեստ և 'ի գործս նոցա , յորոց հաւաքեալ զարժանաւոր իմաստութիւն և ըղ-ձիպաղագոյն՝ անարժան և վարկպա-րազի ոչ է յայտնակ կոչեցելոցն , զի մի 'ի վարձուցն պարտութենէ զրկեսցին , զոր . երկաքանչիւրոցն խոստացաւ կողմանց տէր այգւոյն և հնձոցն ։ Ոմանց ասելով . Երթայք և դուք յայգին , և զոր ինչ արժանն է տանուցուք . և ոմանց թէ Որ հնձէ վարձս առցէ , և՝ յայսմիկ է բանն ճշմարիտ , զի այլ է որ սերմանէ՝ և այլ է որ հնձէ . և՝ առաքեցի զձեզ հնձել զոր դուք ոչ վաստակեցէք ,

այլք վաստակեցին և դուք 'ի վաս-
տակս նոցա մտէք: Ուրեմն Թեթևա-
գոյն քան զսերմանողացն կամի ա-
սել զհնձողացն աշխատութիւն. իսկ
զվարձն ոչինչ զանազանեալ, որպէս
վերագոյնն ասաց. Ո՞չ դուք ասէք
թէ այլ ևս չորք ամիսք են և հունձք
գան. ահաւասիկ ես ասեմ ձեզ.
ամբարձէք զաչս ձեր և տեսէք զար-
տորայսն զի սպիտակացեալ են և 'ի
հունձս հասեալ. և որ հնձէն վարձս
առցէ, և ժողովէ զպտուղն 'ի կեան-
սն յաւիտենականս, զի որ սերմա-
նէն և որ հնձէ՝ հասարակ ցնծաս-
ցեն: Արդ եթէ զանհնարին ծան-
րութիւն և մեծութիւն աշխատու-
թեան առաքելոցն փոքրկացուցա-
նել 'ի լսելիս նոցա քան զմարգա-
րէիցն կամեցաւ, զի անդանդաղս և
առանց զանգիտելոյ յառաջիկայն
կազմեսցէ պատրաստեսցէ գործ,
զի՞նչ ունիցին ասել այժմուքս ա-
նուանեալք 'ի սոյն, որոց ոչ ընդ
Հրէայս և ընդ Սամարացիս և ընդ
հեթանոսս հակառակութիւն ինչ
միճաբանութեան կայ առաջի, և ոչ

ընդ ծովս և ընդ ցամաքս կասկածաւորին ուղևորութեան ընթացքս, կամ զանից և կապանաց երկիւղ. ոչ քարկոծանք, ոչ բանդարգելութիւնք. ոչ մահուան զանազանութիւն յանտանելի տանջանաց՝ և 'ի սորոյ ակընկալութիւն. և այնպէս անկեալ կան անշարժ յիրս ընձեռեալս նոցա, որպէս թէ չիցեն բնաւ տալոց համար՝ և ոչ ամենեւին յորդորին ոչ յերկեղէ պատուհասից, և ոչ յառաքինի գործոցն խոստացեալ վարձուց: Չար է անգործութիւնս այս, քան զամենայն անպտղութիւնս բարեաց:

ԺԶ. Կալ զլուխ յետ Քրիստոսի՝ մարմնոյ նորա՝ որ է եկեղեցի, և զանդամոց իւրոց մանաւանդ թէ ըզՔրիստոսի անդամոց, և ոչ մի ինչ իրօք իւիք զարմանոյ առնել փոյթ. զի՞նչ գործ է գլխոյ, սաստ այլ դու. ո՞չ 'ի նմա են զգայութիւնք զգալեացս ամենայնի. միթէ խնո՞ւ զաչս զի մի՛ զլոյս տեսցէ յաչաղանօք բոլորի մարմնոյն, և ականջաց դրո՞ւնս արգելուք եդ անլսութեան զձայնից

յօդաւորաց կամ անյօդից, կամ թէ ըռընդաց զհոտոցն վտառս առ նախանձու ապականեսցէ երբեք կամ ձանձրութեան և վաստակոց. և բերանոյ և կզակաց շրուշակ և դանդաղաւանդ շուրջ կազմեալ եդ չուառել և ըմբել առ կեալ. և ոչ արտաձայնեալ բարբառ և բան, և յամենայն մարմնոյն զատոյց զշօշափականն զօրութիւն, զի մի այրեսցի 'ի հրոյ՝ կամ 'ի ցրտութեան սառնամանեաց պաղեալ զգասցէ ցաւոցն, և մի զխոշոր ինչ կամ զողորկ՝ զկակուղ և զխիստ՝ զանգայտ և զհոծ որակութեան ծանիցէ զանազանութիւնս. և ոչ ձեռք առ արուեստս և տուրևառութիւնս պատրաստք և դիւրաշարժք եղիցին, և ոչ մի ինչ 'ի մասանց մարմնոյս գործի՝ յանկան իւր հպեսցի, յոր 'ի բնութենէս պատշաճեալ որոշեցաւ արարչագործութեամբ Աստուծոյ, և զիա՞րդ կենդանի բնաւ իցէ կամ սասասցի: Արդ և ինքեան և որոց ընդ ինքեամբ այսպիսի ինչ ոչ գլուխ գործեսցէ կամ խորհեսցի յորում ըստ մասանց

երբեւ 'ի գեղեցիկ նստեալ 'ի մասայ զըր_ պատասաւորական կարգ. բաշխեալ իւ_ րաքանչիւր գործիականաց մասանց յարդարեալ կաղմէ զբովանդակն ա_ մենապատշաճ յօրինուածով. զոր որպէս յարմարացուցական առեալ պատկեր, ամենայնիւ յայս կար_ գեալքն ժողովրդականեալք պարտին և ոչ մի՛ ինչ զհակառակացն գործել, զի մի՛ ընդ նոսին և նախ քան զնոսա ամենապատիկ առաւելութեամբք 'ի վայր քարշեալ և կրել մղումն բըռ_ նութեան, երբ 'ի գագաթանէ յոյժ բարձունք և ծայրագունէ անկցին 'ի խորխորատ անտանելի և տարտարո_ սական վհին, որ է բաժին ժառան_ գութեան յաւիտենականի առաջ_ նորդաց կուրաց, և հետևեալ նոցա մոլորողաց, ըստ որում առակեաց Տէր անշուշտ բանիւ։ Քանզի առաջ_ նորդ զօրու և քաղաքօրէն քաղաքի կամ նաւաստի՝ յընտրութենէ կա_ ցեալք իմաստնոց, և չափաւորաց՝ զանսխալ հմտութիւն իւրեանց 'ի նոսա ստուգապէս զոլ վարկանողաց, ոչ զի մատն լիցին սպառեցան յայնոսիկ

նոցայցն աւանդելոց , այլ զի հանճարով քան զկարծեօք բաւականագոյնս վճարեացեն զընձեռեալ նոցա գործոցն մատակարարութիս . իսկ եթէ գացի 'ի նոսա ննդութիւն խորամանգագործութեան՝ թուի ինձ եթէ առանց փրկանաց և աղեր՝ սաբանութեան հատուցանելոց են զարգարապէս հատեալ 'ի վերայ նոցա կորստեանն պարտս , զորս երկրորդ և նուազ , կամ զխակագոյնն ասել՝ առ ոչինչ գնել է արժանաւոր և համարել 'ի դատաստանին առ Աստուած մեղուցելոց , քանզի անդր ընթացեալ եղանէ հօտին հոգեբարձութեան՝ թերատեսութիւն և անփոյթութիւն . և տարացոյց առ այս որդւոցն Հեղեայ անուղղութի հօրն Հեղեայ խրատու , վասն չծառայելոյ ժողովրդեանն Աստուծոյ . և կրիցն յայսր սակս յոլովութիւնք և սաստկութիւնք յանձինս՝ և յամենայն ժողովուրդն հանդերձ հարբըն յանդիմանչաւ թեթևագոյն բանիւք , և որքանք 'ի դարձէ տապանակին տեառն և անկումն տանն

անարգութեամբ 'ի պատուոյ երի-ցութեն . սակայն փոքր կարի և յոյժ նուազ այս եւս է, որքան ըստ մար-մնոյ միայն և վճարական եղեալ :

ԺԷ . Վասն այնորիկ և Տեսուչք իսկ սուրբն և անուանին, զի և 'ի փո-քունցն Թուեցելոց մի՛ ինչ արտասցեն անտես . քանզի կոյրն կոյր է յորս ոչն տեսանէ . 'ի գիւտ միոյ ոչխարի և դրամի միոյ կորուսելոյ խնդութիւն է՝ ոչ գտողին եւեթ և տեառն, այլ և այլոց եւս բազմաց դրացեաց կոչե-ցելոց և բարեկամաց . զհրեշտակա-կանացն ասել կարծեմ զօրութեանց . և 'ի նոցանէ ոչ միայն 'ի կորստեա-նէ գտանել ոչ ջանան, այլ և մղեն ընկենուն զբազում մանաւանդ ե-թէ զանձինս 'ի կորստեան անգտա-նելի գուբ, զի թէ յածեալքն ընդ ծով և ընդ ցամաք միոյ աղագաւ ե-կամտի՝ զոր վատթար օրինակաւ ան-ձանց՝ ընդ ինքեանց և կրկնակի եւս առնէին որդի գեհենին, այնպէս 'ի տեառնէ յանցաւորս նախատեցան յաւիտենից կշտամբանաց, նոյնքա զի և

վըտունան և ոչ մի կորուսանեն ցանկ, զի՞նչ արդեւք լսելոց և կրելոց իցեն յայնմ յաւիտենի, քանզի հանապազորդ լսելով չգրեն ինչ աղամանդեայ ունելով սիրտ, ըստ փորոտեաց լեւիաթանայ՝ և հոգի երկաթեղէն, յորմէ և նա զողինն կարծրութիւն ասի նշանակաւ բերել։

ԺԸ. Ասին և Հրաւիրակք՝ ոչ անխորհրդաբար և առանց ստուգութեան, քանզի յառաջագոյն և կանխագոյն է հրաւէր քան զվայելումն հրաւիրականացն բարութեց։ Եւ որքա նախակարգեալ առաքեցան օրինակ իմն, ոչ միայն 'ի մերձաւոր և պատրաստական ընթրեացըս՝ որ յեկեղեցւոջ այժմս տեսանի կոչել խրախութիւն. այլ և յապագային սեղանոյ անձառելի գինարբուս զուարձութեան. վասն զի որպէս մարգարէիւքն յայս կանխաւ հրաւիրեաց, և արդարացոյց, և փառաւորս արար զյառաջածանօթս ինքեան՝ Աստուած՝ առաքելական գործակցութեամբն 'ի կերպակցու-

նոյ նուազագունի ընկալման զօրու-
թիւն և իշխանութիւն լուսնոյ՝
զոմանց 'ի ձեռն մկրտութեան սրբոյ
աւազանին՝ որով է յորդեգրութի՟ն
Աստուծոյ մտանել. և զկնիսոց յետ
այսորիկ գլորելոյ՝ անձամբ ապաշ-
խարութեան՝ ըստ զանազանութեան
գործոցն մեղանաց, և ըստ ժամա-
նակին երկայնութեան, ըստ պատ-
ճառանաց հասակին ժամանակի,
տեղւոյ, յեղանակի, դիմաց երկո-
ցունց և մաքրեալ ընծայեցուցանեն
վերստին Քրիստոսի, 'ի փառս
Քրիստոսի և Աստուծոյ Հօր 'ի ձեռն
ամենաբաւական սրբոյ Հոգւոյն. և
հանեալ յանարգէ զպատուականն
լինին իբրեւ զբերան Աստուծոյ. և
այսպիսի որդեգրութիւն գեղեցիկ,
չէ զանազանութիւն ըստ պարգեւի
յառաջելականէն պատուոյ: Որոց
հրամայեաց ասէր. Եկայք և արարից
զձեզ որսորդս մարդկան. և եղակի
ու մի. Ցայսմ հետէ զմարդիկ որ-
սասցես 'ի կեանս. և մարգարէիւն
զայս յառաջագոյն խոստամանք աւե-
տարանեալ. Առաքեցից նոցա որ-

տորգս եւ որսասցեն զնոսա յամենայն լերանց, 'ի հակառակութենէ 'ի բաց տանելով ուղղորդութենէ, զորմէ ասէ. Երբեւ վարժ ձգեալ առ 'ի Տաճարոյն, կամ թէ 'ի գլուխ գահաւանդի. զոր որսորդք յորս հաստատեցին, զուականն ամենատարածին որկեալ յաշխարհիս ծով, եւ ըմամբ մարդկան ձգեալ 'ի ցամաք՝ զբարի բարին ժողովեն յամանս 'ի կրկին շտեմարանս, իսկ զխոտանն 'ի բաց յերկոցունց ընկենուն ։

ԺԹ. Իւ եթէ կոչի այսպիսին Տաճարապետ, վասն զի ոչ զանշունչ նիւթոյ շինուած 'ի ժառանգութե գլխաւորի, այլ զբանական կենդանեաց ժողովոյ, ո՛ որք արդեւք հակառակիցէ. քանզի յայսմ տաճարի փեսայ Թագաւոր եւ արքայ արքայից Քրիստոս 'ի Յովհաննէ վկայեցաւ. Որ ունի, ասէ, հարսն նա է փեսայ. իսկ բարեկամ փեսային որ կայ եւ լսէ նմա՝ ուրախութեամբ ուրախ լինի վասն ձայնի փեսային ։ Այլ եւ մանկունք այսր առագաստի առանց

սգոյ և տրտմութեան վարէին և կեան , զփեսայն ընդ իւրեանց ունելով , յետ որոյ 'ի գահ երկրորդութեան ընտրեալ 'ի փեսայէն այր այսպիսի՝ զկամս կատարեալ նորա կարգեցաւ 'ի հրամանէ , և որ ինչ վայելուչն և արժանաւոր է սահմանեալ , յետ նորա՛ առագաստականացն՝ և զպի_ տոյից նորա առատութիւն զառ 'ի Քրիստոսէ հրամանաւորեալ . ա_ ռանց նախանձու զեղուլ յուրա_ խութիւն հոգւոց ձրի բաշխմամբ . այսինքն , զնորա առեալ նմա մատու_ ցանել ըստ Դաւթայ . լսել և մեծի հարսնածուին Պաւղոսի 'ի զգուշու_ թիւն առթեցելոյն . Խօսեցայ , ասէ , զձեզ իբրև զկոյս մի սուրբ յանդի_ ման առնել Քրիստոսի . բայց երկըն_ չիմ գուցէ ապականեսցին իմաստք ձեր 'ի միամտութենէն Քրիստոսի , և դարձեալ . Խորհուրդս մեծ է , բայց ես ասեմ 'ի Քրիստոս և յեկեղեցի . և այսուքիկ զեկուցանէն փոխանոր_ դաց նոցա զնոյն ունել մտածու_ թիւն . իմաստս. սուրբս յերկաքան_ չիւր կողմանս զվայելուչս փեսաւորէ

և հարանածուք մեծի այսորիկ խոր-
հրդոյ. և իմանալ և գործել ոչ հեղգ
և գանգատեցեա երբէք զոք, քանզի
Անիծեալ. ասէ, որ գործէ զգործ
տեառն հեղգութեամբ. իսկ ան-
գործն զի՞նչ կրելոց իցէ, հեղգու-
թեամբ գործողացն զայս բաժա-
նելով:

Ժ. Իսկ Հաւատարիմ կոչի ծա-
ռայ հակառակադրութեամբ ա-
նհաւատարիմն ոմանց, որպէս
զոգին Յուդայ և մատնիչ, քանզի
զանէրաւնեան ոչ մտերմութեամբ մա-
տակարարեալ և ուղիղ դատմամբ
տասանեայ զնա երբև խորհիչ նենգաւ,
և զգերդաստանին յանձնեցելոյ և
հաւատացելոյն նմա տալ 'ի ժամու
զկերակուրն անփոյթ արարելոյ, և
ինքնակրութեան ախտի 'ի չարիս մե-
ծագունին ծառայեցելոյ արբշռու-
թեամբ և շուայտութեամբ զոգին
անկրաւ, այլ կարի յոյժ արդար
վճիռ պատուհասից 'ի վերայ ածէ,
ըստ որում լսեա յաւետարանէ ան-
տի որքոյ. զի և 'ի մարմնականն երա

հաւատարմութիւն առ անարգ՝ ծա-
ռայից՝ յազատութիւն ածեալ պա-
տուեաց զնոսա ։ Եղիազար դամաս-
կացի՝ երէց տանն Աբրահամու ,
յառ Աստուած բարեպաշտութե-
նէն և 'ի հաւատարմին գոլոյ առ
ըստ մարմնոյ տէրն , և փոյթ յա-
ւանդեալ գործոյն նմա արբանե-
կութիւն , եղեւ այնպիսի սիրելի և
անուանի , ոչ միայն յայնժամ այլ և
այժմ և առ յապա մնայելոց 'ի տէ-
րունեան գրոյն ։ Այս և զՅովսէփ
'ի տանն ծառայութեանն 'ի կապա-
նաց բանդէ յաթոռ թագաւորու-
թեան նստուցանէր . նոյն և զԴա-
նիէլ . լուր զի՞նչ պատասխանի Դա-
րեհի տայր 'ի գբոյ անտի առեւծուցն
յորժամ եկն ընդ առաւօտն՝ յու-
սացեալ 'ի տէր վասն սիրելւոյն փըր-
կութեան , և 'ի բացուստ նախ քան
'ի բերան հասանել գբոյն , առ ան-
ձուկ աղաղակեաց ասելով . Դանիէլ ,
եթէ կարացն Աստուածն քո փրկել
զքեզ զոր դու յաճախ պաշտէիր .
իսկ նա . Աստուած իմ առաքեաց
զհրեշտակ իւր՝ և եխից զբերան ա-

առեւծուցս, զի առ Նա հաւատարիմ գտայ և առ քեզ ոչինչ անիրաւե_ցայ։ Ուստի և Պաւղոս յոլովակի խրատ տայ՝ միամտութեամբ սրտի և երկիւղիւ ծառայել տերանց, և 'ի հնազանդութեն կալ իշխանաց, որոց ոչ կամիցին զատուածպաշտութեն կարգ խափանել. և եթէ առ ծա_ռայակիցս և համատոհմիկս այսքան խնդրի հաւատարմութիւն, որչափ առ Թագաւոր ամենայնի և Ա_տուած՝ պարտիմք անխարդախ ունել միտս՝ և առանց այլթաքելոյ վարս. մանաւանդ արժանաւորեալք յե_կեղեցւոջ առաջինք գոլ և գլուխ ան_դամոց Քրիստոսի. Երանի, ասէ, ծառայից այնոցիկ՝ զորս եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս։ Եւ զի՞նչ երանականին իցէ հատու_ցումն. բազմեցուցանէ զնոսա և գո_տի ածեալ անցեալ պաշտեսցէ ըզ_նոսա։

ԽԱ. Այլ և Պահապան 'ի զգու_շութենէ յարթուննն գոլոյ յիրաւի անուանակոչի, ըստ որում և Դա_

ւխթ սահմանէ 'ի վերայ հոգաբարձութեանն և անընդհատ խնամոց Աստուծոյ առ ժողովուրդն. Ոչ ննջէ և ոչ 'ի քուն երթայ, ասէ, պահապանն Իսրայելի. և յետ Նորա հովիւք և հեղինակ ժողովրդոց իւրոց և անուամբք պարտին ստորոգութիւն ընդունել, զի մի ոք և մի յոչխարաց և 'ի գառանցն Քրիստոսի կորիցէ, զորս արածել մեծին հրամայեաց Պետրոսի. Ինքն տէր հօտին խնդրէ գործոյս այսորիկ հարկաւորութիւն, ըստ օրինի ցայգապահաց և ցերեկապահաց լինել վշտամբեր և տարահանդիստ: Որպէս ասէր Յակոբ, Զցայգ ցրտակէզ լինէի, և զցերեկ արևակէզ. այլ և զգողօնն յանձնէ պահանջէի, և զգազանաբեկն առ քեզ ոչ բերէի, Լաբան: Եւ եթէ անբանիցն բնութիւն արօտականացն ընտանեաց այսքան խնամոց և տառապանաց երկոց՝ 'ի նախախնամողաց ունի պէտս, և որով հովուէն հօտերէց և երկեւղ և պատկառանս 'ի տեառնէն են. վասն որոյ զհաւատարմութիւնն անբողջ և անլոյծ

Այլք վաստակեցին, և դուք ՚ի վաստակս նոցա մտէք. ո՞րքան և զծանուցէ իշխեսցէ քրթմնջել զինուորցն յեկեղեցւոյն քրտանց և վաստակոց. ոչ եթէ յոյժ չէ ծանր, ասեմ զայս, այլ բաղդատելով ընդ առաւել տաժանականին:

ԻԲ. Իսկ զանձ ունել՝ յաղագս բանին հաւատոյ իմացի ասել, զոր արքայութիւն երկնից, Փրկիչն անուանէ՝ ծածկեալ յագարակի քարոզութեանն, և գնել ընդ ամենայն պատճառաց կենցաղոյս, նաև ընդ կելոյ և ընդ արեան. քանզի աշխարհս ոչ է գնելի՝ այլ հրաժարելի, առաւել՝ զի մի՛ զանձինս արասցուք թշնամիս Աստուծոյ: Է և բազմութիւն մանկանցն և քաջութիւն ազնուականութեանն զանձ արժանի պարծանաց և գոհութեան զՏեառնէ. Ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ Աստուած. քան զոր ոչինչ ճոխութիւն և բաստ պանծալի և երանելի է: Նմանապէս և անձնական առաքինութիւնք իւրաքան-

չիւր ումեք՝ որ կոչի քաղաքաբարութիւն . և է սա խառն ընդ երկոսին՝ և անբաժանելի , զի և ոչ իսկ է կար ուանց սորա բարի ումեք գոլ , և վճարել ինչ՛ի հաճոյիցն Աստուծոյ , ոչ հասարակականն և ոչ յատկական ունել հարստութին աստուածային :

ԺԳ. Այլ կերակրիչ և արբուցանող զհոգեւորացն նշանակէ սաի . ոչինչ պակասեցուցանելով յորոց երթան 'ի սնունդ և յաճումն , 'ի կատարելութիւն և 'ի զօրութիւն հոգւոյ , յուրախութիւն և 'ի գեղաւորութի , յանմահականն քաջազգայութիւն , այլ և յառողջութիւն սոցա ազգակցութիւն . զի զայսպիսի խառնագործել կերակուր և մատուցանել ըմպելի , որանց է բարեաց և քաղցրուսումնութեամբ հաշակաւորաց , որք բաւական են ածել հասուցանել զանկատար ոգիս յայր կատարեալ 'ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի :

ԺԴ. Իսկ զգեցուցանելով՝ յոքնա-

տեսակ լոյս . Նախ առաջին յետ մերկանալոյ զհին մարդն գործովք իւրովք՝ 'ի ձեռն մկրտութեան աւազանին՝ 'ի հոգի սուրբ և 'ի ջուր զգեցուցանեն զՔրիստոս, ըստ որում ասէն առաքեալ: Իսկ եթէ դէպ լինի ասել դարձեալ մերկանալ գլորմամբ 'ի մեղս, թէպէտ և տաժանմամբ որ զգենուն՝ զգենու, և որ զգեցուցանէն՝ տայ, սակայն եթէ ոչ հանդերձեալ իցեն երկաքանչիւրքն յարհամարհանս գալ բարւոյն անձանց, հարկաւոր զաշխատութիւնն համարելի է՝ զոր առաքեալ արար առ Գաղատացիսն և առ այլս ոմանս, վերստին երկնել մինչև նկարեսցի միւսանգամ 'ի նոսա Քրիստոս: Երրորդ, 'ի նահատակութե՛ն մարտի զՔրիստոսի զինուորն ընդդէմ չար ախոյանին կազմեալ կռուելով, և ամենայն հակառակ զօրութեանցն որ ընդ նովաւ՝ զսպառազինութիւնն որ ըստ Փրկչին՝ զգենուլ հրամայէ: Չորրորդ, զի ոչ զըստ մասանց եւեթ զօրականս, այլ և զբոլորն զգեցուցանէ եկեղեցի 'ի հանդերձս ոսկե-

հուսամ՝ գործակցելով ատեան և յաղագս նորա, որպէս զի կացուսցէ ընդ աջմէ, զնել պսակ որպէս միոյն, և զարդարելով զարդու որպէս հարսն։

ԻԵ. Եւ Նուիրիչ է՝ մատուցանելով Աստուծոյ զիւրանն նորայս, եթէ զանձն և եթէ զայլս՝ սուրբ, մաքուր, յստակ, անարատ նուիրանոցաւ մեծաւ եկեղեցեաւ. ուրախացուցանելով զբարերարն Փրկիչ, և հաշտ արժանաւոր ընծայարութեամբ և ընտանեգունաւ. Կերայ, ասէ, զհաց իմ ընդ մեղու իմում, և արբի զգինի իմ ընդ կաթին իմում. քանզի նուիրեալ ընդ նմա բարեգործութիւնն ՚ի մարդկանէ, և ընդ նոսին ինքեանս խրախանայ հաճեցեալ աստուածաբար։

ԻԶ. Այլ Թէպէտև ասացեալ խորհրդականն զատեանէ ասելով. Մի միջնորդ Աստուծոյ և մարդկան. ըստ որում համանգամայն է Աստուած և մարդ. համագոյ Հօր՝

վասն ճշմարտապէս ծնունդ և բան նորա գոլոյն՝ և Որդի միածին. և համագոյ մեզ, յաղագս կատարեալ մարդեղութեանն 'ի կուսէն. ոչ մերկ և անմարմին գոլով բան, որպէս 'ի սկզբանն է, և ոչ մարդ սոսկ և միայն՝ որպէս հասարակական ոք, այլ յերկուց մի Տէր՝ և մի Որդի՝ և մի Քրիստոս. և Աստուած, Աստուած յԱստուածոյ բնութեամբ, և մարդ կատարեալ՝ և աներկբայ 'ի մարդկանէ՝ այսինքն 'ի Մարիամայ աստուածածնէ: Եւ դարձեալ զի հաշտեցոյց զմեզ ընդ հօր իւրում, յանձին իւր որովք կրեացն և որովք գործեաց օրէնակօք միջնորդութեամբ ձգելով 'ի խաղաղութիւն: Սակայն և ընտրելոց 'ի մարդկանէ ծառայից իւրոց՝ զնոյն ըստ չափու և բաւականապէս գործել ոչ անարժան համարեցաւ. որպէս գլխոյ մարգարէիցն, Մովսիսի, Նոյի, և քահանայից ամանց և մարգարէից յետ նորա, կամ դատաւորաց և թագաւորաց. և զկնի ամբառնալոյն իւրեան յերկինս՝ առաքելոցն և զորս

նոքայն կացուցանէին փոխանորդս , և մինչև ցայսօր ժամանակի կացելոց արժանաւոր սրբութեամբ , և ամենայն բարեձևութիւնք բերեալ առ մարդիկ լինին . և մարդկայինք պտուղք առաքինութեան , 'ի վեր առաջի նորա մատուցանին նուէր ընդունելի , և արդելանին էջք բարկութեան Աստուծոյ 'ի ժամանակի վրէժխնդրութեան , և խրատեալք մարդիկ բերանոյ նոցա բանիւք հեռացին 'ի սխալանաց որովք շարժի 'ի տանջել հաշտն և բարերար միայն և Փրկիչ : Բայց արդ յոլովք 'ի նոցանէ ոչ ըստ ճառեցելոցդ բարեբերք և չարահալածք , այլ հակառակին են մասունք :

ԻԷ. Ունել ինչ և դատողութեան հասարակութե առ միջնորդութիւն . քանզի օրինակ իմն և սա միջին ըստ ուղղութեան գոլով կըշռոց հակամիտել անիրաւութեան թոյլ տայ և ոչ ընաւ երբէք , այլ առուգագոյն ընտրութեամբ ժողովեալ 'ի միտս զոտոխսաց և զաղէբատ-

ղաց հակաբանաբար ատամունս, ճըշգրիտ ըստ իւրաքանչիւր՝ արժանաւորութեան 'ի վեր սահմանելով ածէ զվճիռ դատաստանին. վասն զի յայնոսիկ 'ի հզօրագունիցն ընկալան հրաման և օրէնս ոչ խոտորել ոչ յաջ և ոչ յահեակ, այլ զմիջինն գնալ անսայթաք արքունական պողոտայ: Հրամայեաց և տէր ոչ ըստ աչս դատել՝ այլ ուղիղ առնել դատաստան. քանզի ըստ օրինաց կարծիս տալ ունել աթոռ դատաւորութեան, և առանց օրինաց բերել արտաքս վճիռ՝ զառ 'ի յԱստուծոյ հարուածոցն առանց հրաժեշտի և փրկանաց՝ ունի կրել սատակութեամբ պատուհաս. որպէս ասէ առաքեալ առ Անանիա քահանայապետ. լուիցեն դատիչք եկեղեցւոյ և պետութեան՝ քահանայից անուամբ եւեթ դունաւորեալք, և երկիցեն 'ի գաւազանէ զօրութեան Աստուծոյ. քանզի ոչ առ 'ի խրատ զայս հարուած երանելին մարգարէանայ մանկաբեր Պաւղոս, այլ 'ի սատակումն կորստեան, և մի՛ ինչ

կարծեսցեն օրինաց եկեղեցւոյ կամ դատեսցին զոք առանց իրաւանց արդարութեան, Թերեւս կարասցեն զերծանել 'ի սատանայական անտի գանէ. դատաստան արդար դատեցարուք. ողորմութիւն և Ճշմարտութիւն արարէք՝ ասէ աստուածայինն գիր. կորուսանել զիրաւունս ոխակալաց և կաշառառուաց է, և ոչ ծանօթից Աստուծոյ և պաշտօնէից, մի խաբեալ պատրեսցուք յիմքէ, գործել առաւք զհակառակս օրինաց մերոց և աշխարհականաց:

ԻԸ. Արդ զինչ առաւելեալ կամք ուսուցանել մեզ, յորժամ ասիցէ. Այսպէս համարեսցին զմեզ մարդիկ՝ իբրեւ զպաշտօնեայս Քրիստոսի, և հազարապետս խորհրդոցն Աստուծոյ. արդ խնդիր է 'ի մէջ հազարապետաց եթէ ոք հաւատարիմ գտցի. այլ քանզի խորհրդածուք Ճշմարտութեանն և քարոզք բանին գերազանցեալ զպատուոյն և զիշխանութեանն ունին զօրութիւն և փառաւորապէս 'ի տունս Թագա-

ւորաց հազարապետք, յորոց պարտ է և հաւատարիմ գոլ և անխարդախ յամենայնի՝ ըստ արժանի ընտրութեանն և սիրոյ, և այնքան զի մինչ ոչ ումեք կարծել յանատեղեացն ինչ խորհել նոցա կամ գործել: Նոքա իսկ յայնքան համարձակութիւն յանդգնութեան մտաբերել, որպէս զի իշխել 'ի խոյզ արկանել զանկասկած նոցա առ տէարսն՝ և հնազանդութեան և սիրոյ մտերմութիւն, վասն զի հեռի է այսպիսի կարծեաց քննութե̄ 'ի ճշմարիտ բարեկամութենէ: Ուստի և յաւելու 'ի վերայ առաքեալ աւելորդ առ կորընթացիս. Այլ և ինձ այս անարգանք են եթէ 'ի ձեռն դատեցայց՝ կամ բնաւ իսկ 'ի մարդկանէ. զի ոչ տայր պատճառս 'ի պաշտամանն՝ յիրաւի զայս ասէ: Այսպէս որք արժանաւորեցան պատուոյ վերակացուք եկեղեցւոյ՝ որք զկնի առաքելոցն՝ եւս պատշաճ և օրէն է և ոչ սոցա տալ ումեք իշխանութիւն յաղագս թերի վարուց 'ի վերայ ինքեանց սրել ըղլեզուս, որքան իցէ հնար և կարո-

զութիւն , և մի՛ թշնամանաց պատուոյն և անձին դատապարտութեան լինել առիթ և պատճառ. վասն զի որոց շատն տուաւ առաւել եւս պահանջեսցին :

ԺԹ. Զայսքան և զայսպիսիս յեկեղեցւոջ բարեկարգութեան յօրինուածս՝ և հաճելի գրութիւնս , կոչեն համառօտիւ 'ի տեսչութենէ յօրինման անօրէնութեան , առ սոքօք և ընդ նոսին զամենայն յիշատակելով որքան ինչ յիշատակաւանդեցաւ 'ի տեառնէ քրիստոնէից՝ և յառաջելոց իւրոց , վարուց և բանից պարկեշտութիւն . որոց անտես և մատակարար հաւատարիմ է առաջակացն այսր մեծի և հրաշափառագունի տան Աստուծոյ , որում անտես ինչ արհամարհանօք և ոչ արժանաւոր փութով 'ի վայելուչն գոլոյ թագաւորին բնակողի և որահաճոյ՝ ոչ եղիցի . զի և 'ի մարդկային իշխանութեն կարգեալքն տաճարաց և արքունական սենեկաց և տանց վերակացու յարդարիչք և փութա-

րարք ոչ ինչ և ոչ 'ի փոքունց ան-
գամ իշխեն անտես առնելով զըն-
կենուլ 'ի հրամանացն առ 'ի զարդ
և 'ի շքեղութիւն արքունեացն . և
եթէ փոքունց և մահկանացուաց
երկիւղիւ այնքան նախախնամու-
թիւն բնակութեանն ապարանիցն
առնեն , իսկ ուր բնակէ Աստուած՝
և յորս գնայ ձեռի , որչափ ինչ
պէտք են ջանի և հոգոց յայսոսիկ
որոշելոցն արանց որպէս զի պատ-
շաճական և աջողակ նմա կազմես-
ցեն : Նոքա զանշունչսն՝ իսկ դու
զմտաւորն և զբանական հաւատա-
ցար զարդարել արքունիս Թագաւո-
րին անմահի և մեծի միայնոյ , և իշ-
խես ծուլանալ հեղգութեամբ և
մեղկութեամբ . արդարեւ ահ մեծ է
անկանել 'ի ձեռս Աստուծոյ կեն-
դանւոյ . սակայն են 'ի նոսա որ ոչ
միայն անզարդ թողուն զսիրելին
Աստուծոյ տաճար , այլ և խոհերս
աղբոյ ժանտահոտի , և գաղանաց
պատառիչս 'ի ներքս լնու :

Ն. Այլ զի 'ի տեսարանի աշ-

խառնհի կարգեաց կացոյց տէր Հան֊դիսականս իւր անթուելիս և ան֊համարս ոչ զորոյն ուսուցեալ հրա֊հանգս կամ զօլիմպիականն, և ոչ զպիւթիմեան և զնեմիականն և զկռա֊փամարտիկ, և զոր հասեւաաւրկն ա֊նուանեն, և ոչ զայլս ըստ ժամա֊նակի և իշխանութեան յաւելեալս անմտութեան խաղս, այլ զերկնա֊ւորացն նախանձելի և ցանկալի ա֊ռաքինութեան դուպարս և ընդդի֊մամարտութիւնս. չարի ախոյեանին և մարմնական հեշտախտութեանց, յորում ասպարանի ինքն հանդիսա֊պետն և մարտադիր առաքինի յոյժ զարեալ նախ մարմնով լինէր պսա֊կեալ ամենապայծառապէս, և զկնի֊ցն իւրոց հանդիսականաց գոչէր զյա֊ինքն նմանութիւն. Քաջալերեցա֊րուք զի ես յաղթեցի աշխարհի. և նմանողք նորա յետ նորին կա֊ցեալք իշխան 'ի նմանէ յորջորջե֊ցան 'ի նոյն անուն վկան զնոյնս ա֊ռաքինաբար գործելոյ:

ԼԱ. Իւ յորոշելոյ զաւուն 'ի վասա֊

Թարէ, և զպատուականն յանարգէ, և զդէմս և զգործս, այլ և զժամանակս մտանելոյ և ոչ մտանելոյ 'ի ներքս. միանգամայն և որքան ինչ մերոց երրաց և աւանդութեանց հաւասարի գիտութեամբ որոշմանց տեղեկութե̃. այս կոչել որոշող, յորժամ ոչ խառնակ և անընտիր և շըփոթեալ ինչ 'ի տեսութիւն և 'ի գործ՝ կամ յայլ ինչ արտաքին 'ի նմանէ եղեալ կամ մուծեալ յեկեղեցի գտանիցի. այլ ըստ կարգի ամենայն և ըստ յարմարութեան որպէս խնդրեն եկեղեցւոյ օրէնք:

ԼԲ. Իսկ զի արք բարիք և կատարեալք 'ի ը̃նլոյ զկամս Աստուծոյ՝ նորա կոչին կամք, խնդրոյ ինչ խորագունի չեն պէտք, որպէս Դաւթի ասէ նոյն ինքն տէր, գտի այր ըստ սրտի իմոյ որ արասցէ զամենայն զկամս իմ:

ԼԳ. Այլ ժառանգաւոր հասարակապէս և յատկաբար յաղագս օծութեան, քանզի այսպէս կոչել

սովորութիւն է զգեձակեալս՝ վասն
առ որդին Աստուծոյ նմանութեան:

ԼԴ. Բայց կատարիչ զի սսի,
նախ վասն մկրտութեանն, երկրորդ
ձեռնադրութեան սակս. և ապա
զի ամենայն ինչ յեկեղեցւոջ կանո-
նեալ ըստ բարիոք սահմանի ՚ի փրր-
կութիւն նոցին լինի կատարեալ:

ԼԵ. Եւ խորհրդածութեան բան՝
գերամբարձ իմն տեսանի, Թէպէտ
եւ այլ ամենայն, վասն զի մեծ և
անճառելի է ուսմանս մերոյ տեսու-
թիւն և զօրութիւն զոր ընկալաք
յառաքելոց փրկչին, և ոչ դիւրաւս
և յայտնիս ամենեցուն, այլ որոց
տուեալ՚ի շնորհաց հոգւոյն ՚ի ձեռն
Քրիստոսի, որոյ մասին և ասքս ա-
սին ՚ի խորհուրդ զեզբարս ածելով:

ԼԶ. Եւ Պաշտօնեայ՝ ոչ այս միայն
զպէտս լնլով. այլ և բժշկապէս
դարման խօթացելոց և վիրաւորաց
մատուցանեն այն խնամով, յորս
հպարտութիւն ամբարտաւանու-

թեան ոչ երբէք կարասցէ լինել փամագիւտ , զհետ երթալով խրատու և հրամանաց հեզոյն և խոնարհի տեառն և Աստուծոյ մարմնացելոյ բանին , որ ոչ եկն պաշտօն առնուլ՝ այլ պաշտել և տալ զանձն փրկանս փոխանակ բազմաց . և սփածեալ զենջակ՝ արկանէր ջուր 'ի կոնք և մատուցեալ լուանայր զոտս աշակերտացն և ծառայից՝ վարդապետն և տէր , և սրբեալ մաքրէր զենջակաւն : Եւ վասն զի զանճառելին կատարէր խոնարհութեան պաշտօն օրինակ նոցա զի թէ ես տէրս և վարդապետս լուացի զոտս ձեր և դուք պարտիք զմիմեանց ոտս լուանալ . և երբեմն յորժամ խնդրէին ընդ միմեանս աշակերտքն թէ ո՞ 'ի մէնջ իցէ մեծ , առակաւ մանկան ցածուցանէր զոգւոյ նոցա ամբարձամտութիւն , այլ և հեթանոսացն իշխանօք և մեծամեծօք , իբր նախատինս իմն դնելով զորդւոյն որոտման արգելոյր անպատշաճ խնդիրս . և այլ իմն ուսուցանէր նոցա և ամենեցուն հնար և արուեստ բարձրանալոյ ,

ծառային և պաշտօնեայ ամենեցուն լինել և վերջին. զի և ինքն մատադիւ-րութեամբ ծառայեաց բազմաց. տայր ուրեմն բարձրն այն և նախա-գահ ամենայն երկրաւոր իշխանու-թեան, մանաւանդ եթէ գերաշխար-հիկ և երկնաւոր իշխանութիւն., ոչ այլ ինչ ըստ ձոխութեան իւրոց և անուանց է և առն, քան եթէ պաշ-տօն սարկաւագելոյ բազմաց. եւ եմ առնէ 'ի միջի ձերում իբրև ըղ-ծառայ, և աշակերտն՝ զպաշտօնն իմ փառաւոր ամենեմ առնէ. և զմեզ ծառայս ձեզ վասն Քրիստոսի. և եթէ ամենայն ինչ ձեր է, եթէ Պաւղոս եթէ Կեփաս եթէ Ապո-ղոս. և արդ ո՞ւր իցեն մեծաբարոյ հպարտացն, որք իբրև զգոռոզս ձո-խանան մեծամտութեամբ և թշնա-մանեօք, վասն զի ոչ գիտեն զկոչմանն և զիշխանութեան զիպաւորութի, և եթէ ո՛ւմ իցէ պարտ նմանել ։

ԼԵ. Այլ Աղգաւորս 'ի դիտա-նոցի կացեալ վերայ՝ և զգուշակս յարձակման թշնամեաց. և եթէ ոչ

այնպէս ինչ իցէ՝ դէտս կոչել սովո-
րութիւն է՝ և վարին գիրք յոլովա-
կի հասարակականաւ անուամբ և
բայիւք, այլ և բանիւ բացերևա-
կանօք, նաեւ ամենայնիւ գրեթէ
սուղ ինչ նուազ. որովք առ օգուտ
կենցաղոյս բնաւորեալ են մարդիկ
առ գործ և բան ընդխառնեալ և
վարել. որոյ օրինակաւ և զԵզեկիէլ
կացուցեալ Աստուծոյ 'ի վերայ ժո-
ղովրդեանն, ասէր ցնոյն ինքն. Որ-
դի մարդոյ, դէտ կացուցի զքեզ, և
ապա թէ՝ 'ի ձեռն փողոյ ազդ առ-
նել մարդկան կացուցանողաց. սո-
վորապէս բերեալ նմա օրինակ ասէր
դարձեալ. Որդի մարդոյ, խօսեա
առ որդիս ժողովրդեան քո՝ և ա-
սասցես ցնոսա. երկիր յորոյ վերայ
ածիցեմ ես սուր, և առցեն ժողո-
վուրդ երկրին այր մի յինքեանց՝ և
կացուցանիցեն զնա 'ի վերայ ին-
քեանց դէտ, և տեսցէ զսուրն ե-
կեալ յերկիրն՝ և փող հարցէ և ազդ-
արասցէ ժողովրդեանն, և եղիցի որ
լուիցէ զձայն փողոյն՝ և ոչ զգուշասցի
և եկեսցէ սուրն և հասցէ նմա, ա-

րիւն նորա 'ի գլուխ նորա եղիցի , զի լուաւ զձայն փողոյն և ոչ զգուշացաւ . և նա՝ զի զգուշացոյց՝ զանձն իւր ապրեցոյց ։ Իսկ դէտն եթէ տեսանիցէ եկեալ զսուրն , և ոչ հանիցէ ազդ փողովն՝ և ժողովուրդն ոչ զգուշասցի , և եկեալ սուրն ըմբռնիցէ անձն մի , նա վասն անօրէնութեանն իւրոյ ըմբռնեցաւ , և զարիւն նորա 'ի ձեռաց դիտին խնդրեցից ։ Արդ ըստ որում քաղաք կամ գաւառ երկիւղ և կասկած ունելով թաթարական յարձակմանց , կացուցանեն դէտս 'ի վերայ աշտարակաց բարձանց՝ այլ և բլրոց դիտանոցաց 'ի զգուշութիւն փրկութեան և նորա ամենայն շրջահայեցութեամբ դիտեալ զկողմանս առանց քնոյ և հեզգութեան՝ եթէ դէպ լիցի գալ հէն 'ի թշնամեացն և ասպատակ , ազդեցութեամբ նորա ապրեալքն արժանաւոր պատուոյ և գովութեան զնա առնեն ։ Իսկ եթէ քնով ըմբռնեալ կայ անհոգութեամբ՝ զփրկութիւնէ անտես արարեալ՝ պատճառ ումեք կորստեան լի-

նիցի, անձին առաւել նիւթեաց ըղ-
մահաբերք չնաման: Այսպէս և քահա-
նայ զորքանս ընդ ձեռամբ ունիցի
և որոց եկաց դէտ՝ ամենայն հաւա-
տարմութեամբ և փութով պարտի
զգուշացուցանել, որպէս զի մի՛ անկ-
ցին 'ի սուր սպառնալեաց տեառն.
քանզի թէ այժմ յաւազակին ապան-
մանէ և վիրաց ապրեցուսցեն աշ-
խատութեամբ և սիրոյ ջերմու-
թեամբ ըստ օրինի իւրեանց, և զնը-
շան կենաց և յոգւոյն դիցեն գլուխ
և ճակատ, յայնժամ զերծեալ 'ի
տապաստու՝ սիրոյն գթութեամբ
լինիցին. զի հանապազ իրաւացի և
պատկանաւոր է զոսոխին դարմանա-
կալութիւն զեկուցանել և յուշ
առնել քաղաքացեաց եկեղեցւոյ,
թերեւս կարասցեն պահել առանց
վնասու, կամ զվնասեալն ողջացու-
ցանել. քանզի և այս կարողութիւն
է դիտողաց եկեղեցւոյ թէպէտեւ
ոչ արտաքնոց. մի՛ զտարալսութիւն
ուրուք լռութեան առնուլ պատ-
ճառ, և մի՛ յերկիւղ ընդդիմաբա-
նութեան ողխել զշրթունս. քան-

զի ոչ է այս գիտոյ՝ եթէ ոչ հանդերձեալ իցէ անձին կուտել խորխորատս կորստեան։ Իսկ եթէ առ լրութեամբն և զանդաղանօք և սատանան եւս ոք լինիցի առիթ՝ 'ի նոցանէ ուժովք փոխանակ փրկութեան, զի՞նչ համար ունիցի առ Աստուծոյ, կամ զո՞ պատասպարան աղաւինութեանց ահագին գատաստանին՝ գտցէ ժամանակին. վասն զի առաւել քան բանիցն քարոզութեամբ՝ պարտ էր անձամբ 'ի հաւանութիւն զնորքոյ կացեալն ածել. զի ոչ այնպէս մարդիկ զխրաւ յորդորմանէ բանիցն, որպէս յառաջինն գիմաց քարոզին. զոգտութիւն ընդունել սովին՝ նմանօպէս և զապականութիւն վարուց. քանզի աղդողագոյն և ձգական է տեսիլ աչաց՝ քան զլուր ականջաց յերկաքանչիւրս գործելեացն և հրաժարելեաց։

Արդ այսքաննեաց 'ի զօրութենէ իւրացն անուանց ստորակայից, զի զմնացելոցն լուր եղէց, որչափ քրտանց և աշխատութեան իցէն

պէտք . և զիա՞րդ լուծաք և եղաք անգործ իբրեւ զմեռեալս . ոչ 'ի բանից խրատականաց և հրամանաց Աստուծոյ , և ոչ 'ի կենդանի օրինակաց հարցն սրբոց նախ եղելոց՝ զարթուցեալ երբէք ընդոստանումք յարժանաւոր կոչմանս գործ : խոտորեցաք առհասարակ և հատաք յանպիտանութիւն . քանզի աղ անհամեալ և պականեալ 'ի բնաւորական իւրմէն որակութենէ , չէ իմիք պիտանացու . ոչ յաղբ և ոչ յերկիր , ըստ տերունեան գրոյն . որում փառք և պատիւ յաւիտեանս ամէն :

# ՔԱՆԻ ԽՐԱՏՈՒ

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ

# ԲԱՆՔ ԽՐԱՏՈՒ

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ



Գանձու իմաստութեան ոչ է գտանել ումեք գովեստ զուգական. ըստ որում և ոչ ներհակ է յաղքատութենէ, որպէս բնութիւն լինի, և ապականացու. ուրեմն աստուածային գոլով խոստովանեսցի՝ ոչ աւանց իրաւանց: Որոյ գիւտ, առաջին՝ սաստկութիւն բաղձանաց. երկրորդ՝ յարձակումն խորհրդական, ոչ վայրապար. երրորդ՝ ախտից սատակումն, և օտարութիւն մարմնոյ. չորրորդ՝ երկոց և քրտանց յոլովութիւն, կամ ճշգրտելով ասել՝ անքաւութիւն. որում լծակցի հարկաւորապէս աշխատութիւն և տոկ. հինգերորդ՝ տինա և

առաջին իսկ, երկիւղ տեառն։ Եւ եթէ ոչ առքօք պճնեսցի ոք, զի այսպէս ասացից, գործականին զայս վարկանելով շտեմարանել, պատսել և անսալ բաղբաղելով կարգի և ժամանակի, զնա և ոչ գէթ ճանաչել զիւրն զօրութիւն ասացից. և յոյժ ուղղակի. վասն զի Յանձն չարարուեստ՝ իմաստութիւն ոչ մտանէ. իսկ առ պատրաստականս բարւոյն, զուղղակի դարձեալ՝ զկնի փորձ արկանելոյ՝ ուրախ առնէ պտղոյն քաղցրութեան իւրոյ զաշխատասէր անվաստակ անձնն, յորում զանձնենգն որսացաւ բարս, և զմարմին անմեղ, խուսել փախստիւ 'ի հակառակէն, ինքն սուրբ գոլով և մարդասէր, որ իմաստութեանն է հոգի։